## Հեռաձայնի գաղտնի գործիք մը բռնուեցաւ

Թղթատարական վարչութիւնը առնէ մը ի վեր հետապնդումներ կը կատարէր, ժամէնի հեռաձայնի կեդրոնին մէջ պատահած խանգարումներու առթիւ: Այս մասին լուր տրուած էր նաեւ ոստիկան ոստիկանութեան, որ յաջողեցաւ երեւան հանել գաղտնիքը: Գաղտնի գիծ մը հաստատուած էր այն յարկաբաժնին մէջ ուր կը բնակէր Թուաստանի առժամեայ կառավարութեան նախագահին՝ Կերենսկիի գործակիցը, Զէնզինով: Այս յայտնութեան վրայ ձերբակալուեցան երկու հոգի, իսկ երրորդ մը կը փնտռուի երկու ելեկտրագէտներէն հետ:

## Թուրքիոյ ձեռնարկը օտար Հրեաներուն դէմ

Գրած էինք թէ օրէնսգիծ մը ներկայացուած է Թուրքիոյ ազգ. մեծ ժողովին, օտար Հրեաներու ներգաղթը արգիլելու համար: Պոլսոյ թերթերը կը գրեն թէ օրէնսգծին հեղինակն է Մագնիսայի երեսփոխան եւ նախկին երկրաձեւք առնել, արտասահմանէ Թուրքիա եկող ոչ — թուրք տարրերու մասին: Ան իր այս առաջարկին մէջ նկատի ունի մասնաւորապար Հրեաներու ներգաղթը:

Սայրի Թօփրագ իր առաջարկին իբր պատճառաբանութիւն ցոյց կուտայ կարգ մը երկիրներու մէջ Հրեաներու մասին ձեռք առնուած միջոցները, եւ այն համոզումը կը յայտնէ թէ Թուրքիոյ Հրեաները ունին մտայնութիւն մը որով իրենք զիրենք Թուրքերէն աւելի բարձր կը նկատեն:

Օրէնսգիծ - առաջարկը որ ներկայիս արտաքին յանձնաժողովի մօտ կը գտնուի, հետեւեալ կէտերը կը պարունակէ.

1.— Երբեք չիթոյլատրուիր որ աշխարհի ո եւ է մէկ մասէն դաղթող Հրեաներ Թուրքիա անդամուրուին: Օտարահպատակ Հրեաներ թրքահպատակ չեն կրնար ըլլալ

2.— Այն Հրեաները որ գիտական կամ գեղարուեստական համբաւ ունին, մասնաւոր արտօնութեամբ կրնան Թուրքիա գալ բնակիլ:

3.— Թուրք հպատակութենէն հեռացած Հրեաները անգամ մըն ալ երբեք չեն կրնար այս պատիւը ձեռք բերել:

4.—Ոչ - Հրեայ օտարները թրքահպատակ կարենալ ըլլալու համար, պէտք է յանձնառու ըլլան մէկ տարիէն սորվիլ Թուրքերէն խօսիլ: Անոնք որ չեն յարգեր իրենց այս յանձնառութիւնը, կը դադրին թրքահպատակ ըլլալէ:

## Համալսարան Վանի մէջ

Աթաթիւրքի ճառէն վերջ, ուսումնասիրութեանց ձեռնարկուած է Վանայ լճի եզերքը հիմնուելիք մշակոյթի աւանին եւ համալսարանին համար: Կ'իմանանք թէ, կը գրէ «Ճիւմհուրիյէթ», կրթական գործավար Սաֆֆէթ Արըգան մօտ օրէն Արեւելեան նահանգները պիտի երթայ, այս նպատակով քննութիւն մը կատարելու համար տեղին վրայ: Եթէ պէտք տեսնուի, շատ հաւանական է որ գործավարին ընկերացող պատուիրակութիւնը օդանաւով կատարէ իր ճամբորդութիւնը:

## Խաղաղին պատրաստք Թուրքիոյ մէջ

Թուրքիոյ օդային վտանգի դէմ պաշտպանութեան յանձնաժողովի անդամները, Պոլսոյ քաղաքապետի օգնական Հիւսնիի մօտ հաւաքուելով, քննեցին ցարդ կատարուած պատրաստութիւնները եւ կարգ մը որոշումներ առին մօտերս բացուելիք պատսպարաններու մասին:

Այս որոշումներու համաձայն, տուները կը բաժնուին տպուած ծանուցագրեր որոնց մէջ պէտք է գրել անունը այն անձին որ պատսպարաններուն պիտի հետեւի, եւ այն ժամը՝ որ իրեն ամէնէն աւելի յարմար է:

Դաշնագրերը ամէնուն ալ յարմար դասաժամեր պիտի որոշեն. դասընթացքները ամիս մը պիտի տեւեն, շաբաթը երկու դասաժամով: Եթէ, հակառակ այս բոլոր դիւրութեանց, դասընթացքներուն չհետեւողներ գտնուին, իւրաքանչիւրէն 5 — 25 ոսկի դրամական տուգանք պիտի գանձուի:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՇԱԲԱԹԸ ԶՈՐՍ ՕՐ ԿԷՍ ԳԻՆ, (3 ֆրանք) պիտի հաստատուի ցուցահանդէսին այցելութեանց համար, սկսելով յառաջիկայ շաբթէն, մինչեւ Նոյեմբեր 25, երբ կը փակուի ցուցահանդէսը: Օրերն ալ որոշուած են,— երկուշաբթի, երեքշաբթի, չորեքշաբթի եւ հինգշաբթի:

ՄԵՏԱՂԱԳՈՐԾԱԿԱՆ բանուորները մէկ ժամ գործադուլ հռչակեցին չորեքշաբթի իրիկուն, իբրեւ բողոքի ցոյց: Գործարանատէրները դիտել կուտան թէ բուն պատճառը քաղաքական է:

Ր. ՄԱՔՏՕՆԸԼՏ, Անգլիոյ նախկին վարչապետը, յանկարծամահ եղաւ շոգենաւին մէջ, երբ Հարաւ. Ամերիկա կ'երթար: Ծնած էր 1866ին: Մեծ դեր կատարած է Անգլիոյ աշխատաւորական շարժման մէջ: 1900 — 1912 քարտուղարն էր կուսակցութեան, 1906ին երեսփոխան ընտրուեցաւ, 1924ին ընտրուեցաւ վարչապետ, իսկ երկրորդ անգամ՝ 1929ին եւ մնաց մինչեւ 1935: Ետոյ քաշուեցաւ, առողջական պատճառներով: 1931ին ինքն էր կազմեց ազգ. դաշնակ, իրկնելու համար անգլ. ոսկին.

ԵՐՈՒՍԱՂԷՄԷՆ կը հեռագրեն թէ հինգ Հրեաներ սպաննուեցան քաղաքէն 12 քիլոմեթր հեռու, դաշտի մը մէջ: Անգլիական ոստիկանութիւնը հետապնդումի ձեռնարկեց շուներով, որոնք յաջողեցան գտնել դաւադիրներուն բոյնը: 15 Արաբներ ձերբակալուեցան:

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ ԲՈՂՈՔԸ՝ հակաբոլշեւիկ դաշինքին դէմ, փակուած կը նկատուի Հռոմի մէջ: Թերթերը դիտել կուտան թէ Մոսկուա այս բողոքով անգամ եւս կը հաստատէ թէ նոյն բաներն են Խորհրդային իշխանութիւնը եւ Գ. Միջազգայինը:

ԱՆԳԼԻՈՅ վարչապետը ճառ մը խօսելով, ջերմ բաղձանք յայտնեց որ սերտ բարեկամութիւն հաստատուի Հռոմ - Բերլին առանցքին հետ եւ փառաբանեց անգլեւֆրանսական գործակցութիւնը:

## Հ. Յ. Դ.

### Փարիզ

ԱԼՖՕՐՎԻԼԻ «Ս. Մինասեան» ենթակոմիտէի ընդհ. ժողովը, 12 Նոյ. Ուրբաթ երեկոյ ժամը 9ին, «Հայ Ակումբ»ին մէջ. ժողովէն յետոյ դասախօսութիւն: Կը դասախօսէ Ընկեր Յ. ԹՈՐՈՍԵԱՆ.

### Գաւառ

ԼԻՈՆԻ կոմիտէի ընդհ. ժողովը վաղը. Ուրբաթ երեկոյ գրադարանի սրահին մէջ, 181 Քուռ Լաֆայեթ:















## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Սօլաք Գօյունեան (Կ. Պոլսեցի) կը փնտռէ իր հօրեղբօր աղջիկը եւ տանոր թոռը՝ Հաճի Զմրուխտ եւ Սերաֆիմ Գօյունեանները Մարսէյլ կամ շրջակաները կը բնակին: Ճանչցողներէն կամ հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել՝ Շահան Զոտեանին, 7 Rue du Coq, Valence-Drome.

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ Հայ Կամաւորներու եւ Մարտիկներու Միութեան Ընդհ. Ժողովը 13 Նոյ. Շաբաթ երեկոյ ժամը 8ին «Խրիմեան» Ակումբին մէջ, 2 Ռիւ տը լա Տէֆանս:

ՓԱՐԻԶԻ ՍԵԲԱՍՏԻՈՅ ՆԱՀԱՆԳԱՅԻՆ Միութեան Ընդհ. ժողովը 14 Նոյ., Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին 8 Rue Bossuet սրահին մէջ: Օրակարգ. — 1- Տարեկան հաշուետուութիւն, 2- Նոր Վարչութեան ընտրութիւն:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ Դ. Լիոնի կոմիտէն իր խոր ցաւակցութիւնը կը յայտնէ ընկ. Յակոբ Թուլինեանի իր տիկնոջ դառնաղէտ մահուան առթիւ:




















Le Gérant : M. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17. Rue Damesne — PARIS (13)

Ուրբաթ օր բեռ մը զէնք բռնուեցաւ Լիոն, Սէյ եզերայինները քնիա-կառքին մէջ։ Կառքը կեցած էր քաղաքամիջեական մաքսատան մօտ, երբ պաշտօնեայ մը գիտեց որ յայտարարութեան մէջ արձանագրուած թիւէն աւելի են սնտուկները. Քննութիւն բացուելով զէնքեր գտնուեցան ։

Հինգշաբթի օր Ռիպէռա փողոցին մէջ գտնուած զանազան զէնքերէն եւ պայթուցիկներէն զատ, բռնուեցան երկու պարապ ռումբեր, ինչպէս եւ հաբիւր փոքր ռումբեր, ճիշդ այն տեսակէն որ վերջերս գտնուեցաւ զօր. Փրէթէլայի բնակարանին առջեւ ։

Գեղային նաւարկութեանց ձեռնարկու Անթօնէն Լա Ռոմիկէռի գրասենեակին մէջ (ռիւ Պոզիր) նոր խուզարկութիւններ կատարուելով, ուրիշ զէնքեր ալ գտնուեցան։ Ռիպէռա փողոցին մէջ բռնուած ձեռնառումբերուն թիւն է 1408, բոլորն ալ պատրաստ գործածութեան։ Քննութիւնները կը հաստատեն թէ դաւադիրները ամէն բան նախատեսած էին, վարպետօրէն շինելով բոլոր պահեստները։

Ապահովութեան Տեսչութիւնը 70 խուզարկութիւններ կատարեց միայն ուրբաթ օր, բայց գաղտնապահութիւնը խստացած է քանի մը օրէ ի վեր, թէ Փարիզի եւ թէ գաւառի մէջ. Խուզարկութիւնները կը շարունակուին Լիլի, Քլերմոն-Ֆէռանի, Նիսի, Տիժոնի, Մարսէյլի եւ ուրիշ քաղաքներու մէջ ։

## ՏԷՐՍԻՄԻ ԱՊՍՏԱՄԲՆԵՐՈՒՆ ԿԱԽԱՂԱՆԸ

Լոնտոնի թերթերէն առնելով, հինգշաբթի օր հաղորդած էինք թէ Սէյիտ Ռիզա կախուած է իր երկու որդիներուն եւ ուրիշ 8 ցեղապետներու հետ ։

Թուրք թերթերը հետեւեալ ձեւով կը հաղորդեն այս լուրը.—

ԷՆԿԻՒՐԻ, 15 Նոյեմբեր — Էլ Ազիզէն (Խարբերդ) կ'իմացնեն այս առտու ժամը 4ուկէսին — Թունճէլիի ըմբոստութեան դատը լրացաւ. Ամբաստանեալներէն 58ին վճիռը հաղորդուեցաւ։ Այս վճռին համաձայն ամբաստանեալներէն 11ը մահուան դատապարտուած բայց ասոնցմէ 4ին մահապատիժը 30 տարուան բանտարկութեան բայ՝ փոխուած է, իրենց յառաջացած տարիքին պատճառաւ։

Մահապատիժի դատապարտուածներն են՝ Սէյիտ Ռիզա եւ իր տղան Հիւսէյին, Սէյհանըլը աշիրէթի պետ Հասօ Սէյտի, Եուսուֆանըլը աշիրէթի պետ Գամէր օղլու Ֆընտըք, Տէմիրէյլի աշիրէթի պետ Ճէպրայիլ օղլու Հասան, Քուրէշանըլը Ուլիհիէր օղլու Հասան եւ Միրզա Ալի օղլու Ալի ։

Մահապատիժները այս առտու գործադրուած են։ 14 ամբաստանեալներ անպարտ արձակուած են, իսկ մնացեալ ամբաստանեալներն ալ զանազան ծանր պատիժներու դատապարտուած ։

*** Աթաթիւրք շարունակելով իր պտոյտները, Տիգրանակերտ հասաւ Նոյեմբեր 15ին եւ ընդունուեցաւ արտակարգ ցոյցերով ։

## Հիթլէր Հըլիֆաքս տեսակցութիւնը

Ուրբաթ օր տեղի ունեցաւ Անգլիոյ արտակարգ պատուիրակին եւ Հիթլէրի առաջնական տեսակցութիւնը, տեւելով 2 ժամ։ (Թերթ մը կ'ըսէ երեք, ուրիշ մը՝ հինգ ժամ)։ Մանրամասնութիւնները գաղտնի կը պահուին, բայց արդիւնքը գոհացուցիչ կը համարուի. Տեսակցութեան ներկայ էին միայն Գերմանիոյ արտաքին նախարարը եւ թարգման մը։ Լորտ Հըլիֆաքս անմիջապէս Պերլին վերադարձաւ, ուր պիտի տեսնուէր Գերմանիոյ միւս նախարարներուն հետ ։

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄՈՒՍՈԼԻՆԻ որոշեց ինք ստանձնել գաղթային նախարարութիւնը, զայն կոչելով «Նախարարութիւն իտալական Ափրիկէի»։

ՊԵՏԱԿԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐԸ որոշեցին պնդել իրենց պահանջներուն վրայ, (ամսական 150 ֆրանք յաւելում բոլորին համար)։ Զախակողմեան երեսփոխանները կ'աշխատին միջին ելք մը գտնել

ՊՈԼՍՈՅ ՄԷՋ ՄԵՌԱՒ Եղիպտացի իշխան մը, Ահմէտ Սէյֆէտտին, որ յիմարանոցի մը մէջ արգելափակուած էր 20 տարիէ ի վեր, ազատուած ըլլալով իր ... 1928ին իշխանը ... անգլիական կառավարութեան դէմ, 4.000.000 ոսկի հատուցում պահանջելով, իր արգելափակման համար

ԼԻԲԱՆԱՆԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ հրամանագրով մը արգիլեց մարզական կազմակերպութիւնները.— «Սպիտակ շապիկաւորներ», «Լիբանանեան փաղանգներ», «Նաճճատի» եւն.։ Այս որոշումը մեծ յուզում պատճառեց մասնաւորապէս «փաղանգեաններուն» որոնք 10 000 անդամ ունին։

ԱՄԵՐԻԿԱՆ ՀԱՄԻՏԻ ԺԱՌԱՆԳՈՐԴՆԵՐԸ չահեցան Պաղեստինի մէջ բացուած դատը, որ կը տեւէր 17 տարիէ ի վեր։ Սուլթանի ամենէն վաւերական հաշիւներ ... ժառանգորդներուն կողմէ ... Պաղեստինի կառավարութիւնը, որ Երուսաղէմի գերագոյն ատեանին պիտի դիմէ։ Համիտ, որուն ժառանգութիւնը 50 միլիոն անգլ. ոսկի կը հաշուեն, հաղարաւոր հէքթար տարածութեամբ հողեր ունէր Սուրիոյ եւ Պաղեստինի մէջ ։

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ թերթերը կը փառաբանեն 14 տարեկան տղայ մը, որ իբրեւ հակայեղափոխական Ջեկային մատնած ըլլալով իր հայրը, գնդակահարել տուած է զայն ։

Վիքթոր Քին, «Փառնոյ» ալ Մոսկուայի խմբագրապետը, ձերբակալուեցաւ իր կարգին, ինչպէս եղած էր իր նախորդը։





## Յուղարկաւոր

Այսօր, կիրակի, 21 Նոյ. Հ. Մ. Ը. Մ.ի խառն խումբը պիտի մրցի Էթէնսէլ ոպ Մոնթրէօյի Ա. խումբին դէմ Սթատ տը Փէրշինկի մէջ (Վէնսէնի անտառ)։ Ժամադրութիւն՝ ժամը 1ին։ Շաթօ տը Վէնսէնէն առնել 108—109—110 հանրակառքերը եւ իջնել Սթատ Փէրշինկ։

## ԾՆՈՂՔՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Յ. Կ. Խ.ԱՅԻ Փարիզի Մասնաճիւղի ֆրանսերէնի եւ Հայոց պատմութեան դասընթացքները կը վերաբացուին 11 նոյեմբեր Հինգշաբթի առաւօտ։ Ծնողքներէն կը խնդրուի շուտով արձանագրել իրենց զաւակները, դիմելով տեղւոյն վրայ։ Հինգշաբթի օրերը առաւօտէն մինչեւ կէսօր։ 20 Avenue Porte des Lilas։

## Րաֆֆիի ծննդեան հարիւրամեակը Լիոնի մէջ

Ազգային մեծ եւ անմահ վիպագրին՝ Րաֆֆիի ծննդեան հարիւրամեակի հանդէսը պիտի տօնուի արտակարգ պատրաստութեամբ եւ ժամանակցութեամբ քանի մը կազմակերպութիւններու ։

4, ԴԵԿՏԵՄԲԵՐ, ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 8.30ԻՆ

Գ. Թաղապետարանի սրահին մէջ

Մանրամասնութիւնները մօտ օրէն եւ տեղւոյն վրայ առանձին թռուցիկներով ։





## Ուշադրութիւն

ԴԵԿՏ. 2ին կիրակի օր տեղի կ'ունենայ ՍԻՓԱՆ-ԽՈՄԻՏԱՍ երգչախումբի տարեկան ցերեկոյթ-պարահանդէսը AERO-CLUB de Franceի շքեղ սրահին մէջ։











## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Գ. Յարութիւն Քիլթիկեան վերջերս գտած է իր ազգականներէն Գ. Հայկազուն Թիւրաճեանը որուն հետքը կորսնցուցած էր 42 տարիէ ի վեր։ Մինչեւ երկու տարի առաջ Գ. Թիւրաճեան թղթակցած է Ամասիացի Տիկին Սաթենիկ Փապուճեանի (մօր անունը՝ Անթառամ, որ քոյրն էր պատուելի Գասպարի) հետ որ իր աղջիկներով կը բնակէր Մարսէյլ։ Այժմ իր հետքը կորսնցուցած է։

Գ. Յարութիւն Քիլթիկեան (որ Տիկին Աննայի քեռորդին է) կը խնդրէ հայրենակիցներէ, մասնաւորապէս Ամասիոյ Հայը. Միութեան անդամներէն իրեն հաղորդել Տիկին Ս. Փապուճեանի ճշգրիտ հասցէն։

Գրել՝ Kiltikian H., 6, Rue Geoffroy Marie, Paris (9) կամ 7, Ave. Audra, Colombes (Seine).


Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme — PARIS (13)

